Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1955

ОБЯЗАТЕЛЬНЫЙ
ЭКЗЕМПЛЯР

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զրույցների համար



Առաջավորների փորձից



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*

1506



# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

## Վ. ԿՈՐԻՈՆՈՎ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձը ժողովուրդները դիմավորում են մի այնպիսի ժամանակ, երբ բոլոր երկրներում, երկրագնդի բոլոր մայր ցամաքներում չտեսնված մասշտաբներով և ուժով ծավալվում է ժողովրդական մասսաների պայքարը միջազգային լարվածությունը թուլացնելու, ընդհանուր խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու համար։ Այս օրերին բոլոր երկրների հարյուր միլիոնավոր մարդկանց առաջ է՛լ ավելի վեհորեն է պատկերանում Ռուսաստանի սոցիալիստական ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակությունը ժողովուրդների և պետությունների բախտի համար, ամբողջ աշխարհի խաղաղության գործի համար։*





1847-55

Մեծ Լենինը 1917 թվականի նոյեմբերի
7-ին հանդես գալով Սովետների Համառու-
սաստանյան 2-րդ համագումարում խաղա-
ղության պատմական Դեկրետի ընդունման
առաջարկով, ասում էր, որ այն պայման-
ներում, երբ բուրժուական կառավարություն-
ները և ժողովուրդները գժտված են, «Մենք
պետք է օգնենք ժողովուրդներին միջամտե-
լու պատերազմի և խաղաղության հարցե-
րին»։ Նշելով բանվոր դասակարգի պատմա-
կան դերը խաղաղության և ժողովուրդների
լուսավոր ապագայի համար մղվող պայքա-
րում, Լենինը վստահ հայտարարեց. «Բանվո-
րական շարժումը կհաղթանակի և ճանա-
պարհ կհարթի խաղաղության ու սոցիալիզ-
մի համար»։

Այժմ բոլորը տեսնում են, թե ինչպիսի
ճշտությամբ կատարվեց սոցիալիստական
ռևոլյուցիայի հանճարի կանխատեսությունը։
Մեր երկիրը—մեծ Հոկտեմբերի Հայրենիքը—
դարձավ խաղաղության և մարդկության
պրոգրեսի հզոր գործոնը։ Սովետական
Միության Կոմունիստական պարտիայի և
կառավարության ներքին ու արտաքին լենին-
յան քաղաքականությունը—սոցիալիստական
պետության հզորությունն ամեն կերպ ամ-
րապնդելու քաղաքականությունը, կայուն



խաղաղության և ժողովուրդների բարեկա-
մության համար ակտիվ պայքարի քաղաքա-
կանությունը-վճռական ազդեցություն է գոր-
ծում համաշխարհային իրադարձությունների
զարգացման վրա։

Միջազգային գործերում ունեցած իր ամ-
բողջ հսկայական ազդեցությունը մեր երկի-
րը օգտագործում է այն բանի համար, որ-
պեսզի նպաստի միջազգային իրադարձու-
թյունների զարգացմանը՝ հօգուտ ժողովրդա-
կան լայն մասսաների։ Խաղաղության պաh-
պանում և ամրապնդում, պետությունների և
ժողովուրդների լայն, բազմակողմանի հա-
մագործակցության ծավալում, յուրաքան-
չյուր ժողովրդի ազատ զարգացման պայ-
մանների ստեղծում՝ ահա մեր երկրի ձգտու-
մը համաշխարհային ասպարեզում։

Սովետական պետության արտաքին քա-
ղաքականության հիմնական սկզբունքը
միշտ հանդիսացել է և հանդիսանում է տար-
բեր սոցիալ-տնտեսական սիստեմների
պատկանող երկրների խաղաղ գոյակցության
լենինյան սկզբունքը։ «Սովետական Միու-
թյան արտաքին քաղաքականությունը պարզ
է,— ասաց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի
Նախագահ Ն. Ա. Բուլգանինը Չորս տերու-
թյունների ղեկավարների Ժնևյան խորհըր-

դակցությունում։— Մենք կողմնակից ենք եղել և կողմնակից ենք ժողովուրդների միջև խաղաղության, բոլոր պետությունների խաղաղ գոյակցության՝ անկախ այն բանից, թե ներքին ինչպիսի կարգ է սահմանված այս կամ այն պետության մեջ, անկախ այն բանից՝ դա միապետական թե ռեսպուբլիկական, կապիտալիստական թե սոցիալիստական պետություն է, քանի որ յուրաքանչյուր պետությունում գոյություն ունեցող սոցիալական և տնտեսական սիստեմի հարցը՝ նրա ժողովրդի ներքին գործն է»։

Սովետների երկիրը դարձել է հզոր միջնաբերդ և ոգեշնչման անսպառ աղբյուր խաղաղության, դեմոկրատիայի և պրոգրեսի ուժերի համար՝ բոլոր երկրներում։ 1917 թվականի հոկտեմբերից սկսած բազմապատիկ ուժեղացել է մարդկային հասարակության պրոգրեսիվ զարգացումը։ Այժմ մեր երկրից դեպի արևմուտք և դեպի արևելք գոյություն ունեն սոցիալիզմ կառուցող ժողովրդական դեմոկրատիայի պետություններ։ Կոմունիզմի կարմիր դրոշների ներքո համաշխարհային միասնական սոցիալիստական լագերի մեջ միավորվել է ավելի քան 900 միլիոն մարդ, այսինքն՝ մարդկության մեկ երրորդից ավելին, այդ թվում՝ վճռական



մայր ցամաքների՝ Եվրոպայի և Ասիայի բնակչության կեսից ավելին։ Սոցիալիստական լագերի երկրների փոխհարաբերությունները խարսխվում են եղբայրական բարեկամության, լիակատար վստահության և սոցիալիստական բազմակողմանի փոխադարձ օգնության վրա։

Այժմ համաշխարհային ասպարեզում հանդես է գալիս սոցիալիստական երկրների միաձույլ, իրենց շարքերի միասնությամբ և նպատակների ընդհանրությամբ ուժեղ ու հզոր խումբը, որին գլխավորում են այնպիսի մեծ տերություններ, ինչպիսիք են Սովետական Միությունը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Սոցիալիստական լագերի երկրների խաղաղասիրական արտաքին քաղաքականության ուժն անշեղորեն աճում է, իսկ միջազգային իրադարձությունների զարգացման վրա նրանց արտաքին քաղաքական ակտերի ունեցած ազդեցության էֆեկտիվությունը բազմապատկվում։ Խաղաղության համար սոցիալիստական լագերի երկրների կողմից մղվող ակտիվ պայքարը վիժեցնում է իմպերիալիստական երկրների ծայրահեղ ռեակցիոն և միլիտարիստական շրջանների դիտավորություններն ու հաշիվները։

Դրա ակնառու վկայություն կարող է լինել Սովետական Միության խաղաղության նոր նախաձեռնությունը, որն արդեն հսկայական դրական ազդեցություն ունեցավ միջազգային իրադարձությունների զարգացման վրա։

Մեր երկիրը ձգտում է հասնել ոչ միայն միջազգային առանձին վիճելի հարցերի լուծման, այլև այն բանին, որ տեղաշարժ ձեռք բերվի համաշխարհային իրադարձությունների զարգացման մեջ՝ հօգուտ խաղաղության պահպանման և ամրապնդման։ Վերջ տալ «սառը պատերազմին»— «ուժի դիրքերից» մղվող քաղաքականության այդ այլանդակ ծնունդին, բոլոր պետությունների միջև ստեղծվող հարաբերությունները խարսխել վստահության և փոխըմբռնման հաստատուն հիմքի վրա, բացել կայուն, տևական խաղաղության իրական հեռանկար՝ ահա Սովետական Միության ձգտումը։

Այդ խնդիրների լուծման համար Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և կառավարությունը իրագործեցին արտաքին-քաղաքական մի շարք կարևոր միջոցառումներ։

Սովետական Միությունն այս տարի ձեռ-



նարկեց մի շարք կարևոր քայլերի՝ Եվրոպայում միջազգային լարվածությունը վճռականորեն թուլացնելու ուղղությամբ։ Սովետական Միության նախաձեռնությամբ և ավստրիական կառավարական դելեգացիայի Մոսկվա կատարած ուղևորության շնորհիվ Ավստրիայի հետ կնքվեց Պետական պայմանագիր, որը ավստրիական ժողովրդի խաղաղության ձգտումը և ռազմական խմբավորումների չմասնակցելու ձգտումը զուգորդում է եվրոպական անվտանգության հետ։ ՍՍՌՄ-ի նախաձեռնությամբ, որը ըմբռնվեց և պաշտպանություն գտավ Հարավսլավիայի պետական գործիչների և ժողովուրդների կողմից, ձեռք բերվեց սովետա-հարավսլավական հարաբերությունների լիակատար նորմալացում, որը խոշոր նշանակություն ունի Եվրոպայում և ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու համար։ Սովետական Միության և Հարավսլավիայի միջև բարեկամական հարաբերությունները հաջողությամբ զարգանում և ամրապնդվում են։

Միջազգային մեծ նշանակություն ունի բարեկամական կապերի հետագա ամրապնդումը ՍՍՌՄ և Ֆինլանդիայի ժողովուրդների

միջև։ Ֆինլանդիայի պրեզիդենտ Պաասիկիվիի Մոսկվա ժամանելուց հետո տեղի ունեցած սովետա-ֆինլանդական բանակցությունների հաջող ավարտման շնորհիվ կողմերը համաձայնագիր ստորագրեցին ՍՍՌՄ և Ֆինլանդիայի միջև կնքված բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության Պայմանագրի գործողության ժամկետը երկարացնելու և Պորկկալա-Ուդդի սովետական ռազմածովային բազան վերացնելու մասին։

Սովետական Միության արտաքին քաղաքականության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում խաղաղասեր ժողովուրդների անվտանգությունն ապահովելու համար Գերմանիայի և Յապոնիայի պրոբլեմների կարգավորման ուղղությամբ ձեռնարկվող միջոցառումները։

Արդեն մի քանի տարի է, որ Սովետական Միությունը բարեկամական լավ հարաբերություններ ունի Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հետ։ 1955 թվականի սեպտեմբերին ՍՍՌՄ-ի և ԳԴՌ-ի միջև կնքված Պայմանագրից հետո երկու երկրների բարեկամությունը և համագործակցու-



թյունը հասցվեց մի նոր աստիճանի։ Սովետական Միությունը դիվանագիտական հարաբերություններ հաստատեց Գերմանիայի նաև մյուս մասի՝ Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի հետ։ ՍՍՌՄ-ի և ԳԴՌ-ի միջև, ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև տեղի ունեցած բանակցությունների արդյունքները մեծ նշանակություն ունեն Եվրոպայում իրադրությունը նորմալացնելու համար և խաղաղության գործի համար։ Այդ արդյունքները կարևոր նշանակություն կունենան նաև գերմանական հիմնական խնդրի լուծման համար՝ վերականգնելու Գերմանիայի միասնությունը, որպես խաղաղասեր և դեմոկրատական պետություն։ Այդ խնդիրը կարելի է լուծել միայն գերմանական երկու պետությունների հարաբերությունների լարվածությունը աստիճանաբար թուլացնելու հիման վրա, նրանց բանակցությունների միջոցով։ Միայն այդ կերպ հնարավոր կլինի Գերմանիայի պրոբլեմը հանել այն փակուղուց, որի մեջ նրան գցել են Փարիզյան համաձայնագրերը՝ Արևմտյան Գերմանիան մտցնելով Հյուսիս-ատլանտյան բլոկի մեջ։

Սովետական Միությունը նույնպիսի բանակցություններ է վարում Յապոնիայի հետ՝ դիվանագիտական հարաբերությունները

վերականգնելու և սովետա-յապոնական հարաբերությունների վերաբերող մյուս հարցերը կարգավորելու ուղղությամբ։

Սովետական ժողովրդի մեջ և մյուս երկրների բոլոր բարի կամքի մարդկանց մեջ խոր գոհունակություն է առաջ բերում Սովետական Միության ամրապնդվող համագործակցությունը Ասիայի և Աֆրիկայի շատ պետությունների հետ։ Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Բիրմայի, Եգիպտոսի, Սիրիայի և Արևելքի մյուս երկրների ժողովուրդները, պաշտպանելով թանկ գնով ձեռք բերված իրենց ազգային անկախությունը, պայքարելով խաղաղության պահպանման համար, ձգտում են մերձենալ Սովետական Միությանը, հանձին որի նրանք տեսնում են բոլոր ժողովուրդների խաղաղության, ազատության և անկախության հուսալի պաշտպանին։ Մեր երկիրը ընդառաջում է այդ ժողովուրդների ձգտումներին։ Այդպիսի մերձեցման ճանապարհին մի կարևոր ուղենիշ են Հնդկաստանի պրեմյեր-մինիստր Ներուի և Բիրմայի պրեմյեր-մինիստր Ու Նուի Սովետական Միություն կատարած այցելությունները։ Առաջիկայում Սովետական Միություն է ժամանելու Եգիպտոսի պրեմյեր-մինիստր Նասերը, ինչպես նաև պ-ն Ներուի հրավերով Հնդկաստան են



մեկնելու ընկերներ Ն. Ա. Բուլգանինը և Ն. Ս. Խրուշչևը։

Սովետական Միության մշտական ուշադրության կենտրոնում է գտնվում սպառազինությունների կրճատման, ատոմային զենքի արգելման և նոր պատերազմի սպառնալիքի վերացման հարցի լուծումը, որը կենսականորեն կարևոր նշանակություն ունի բոլոր ժողովուրդների համար։ Այդ հարցում Սովետական Միության դիրքի սկզբունքային տարբերությունը արևմտյան տերությունների դիրքից այն է, որ Սովետական Միությունը ոչ թե լոկ հայտարարություններ է անում սպառազինությունները կրճատելու անհրաժեշտության մասին, այլ շեշտը դնում է զինաթափման ուղղությամբ գործնական միջոցառումներ իրագործելու վրա։ Սովետական արտաքին քաղաքականության այն մի շարք կարևորագույն փաստաթղթերի մեջ, որոնք համոզիչ կերպով վկայում են այդ մասին, պետք է նշել, նախ և առաջ, այս տարվա մայիսի 10-ին Միավորված Ազգերի Կազմակերպության Զինաթափման հանձնաժողովին մտցված ՍՍՌՄ-ի առաջարկը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի 1955 թվականի սեպտեմբերի 19-ի նամակը ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերին։

Այդ փաստաթղթերը խոսում են Սովետական կառավարության այն նոր, համառ ջանքերի մասին, որ գործադրվում են զինաթափման պրոբլեմը մեռյալ կետից շարժելու համար։

Սովետական մարդիկ գտնում են, որ խաղաղության ձգտման սոսկ դեկլարացիաները խաղաղություն չեն ստեղծի։ Դրա համար հարկավոր է կոնկրետ, գործնական աշխատանք։ Սովետական Միությունը օրինակ է տալիս, թե ինչպես պետք է մոտենալ նման հարցերի լուծմանը։ Վերջերս Սովետական կառավարությունը հայտարարեց, որ նա ՍՍՌՄ Զինված Ուժերի ընդհանուր թիվը կրճատում է Ավստրիայից դուրս բերված զորքերի քանակի չափով։ Դրան հաջորդեց Սովետական կառավարության նոր որոշումը, որով Սովետական Միության Զինված Ուժերի թիվը մինչև այս տարվա դեկտեմբերի 15-ը կրճատվելու է 640 հազար մարդով։ Սովետական Միությունը սեփական նախաձեռնությամբ հրաժարվեց Ֆինլանդիայի Պորկկալա-Ուդդում ռազմա-ծովային բազայի վարձակալությունից, իսկ դրանից առաջ հրաժարվել էր Պորտ-Արտուրի բազայից, որը գտնվում էր Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Սովետական Միության համատեղ



իրավասության ներքո։ Պորկկալա-Ուդդում եղած բազան 1956 թվականի հունվարի 1-ից վերացնելուց հետո ՍՍՌՄ-ը ոչ մի ռազմական բազա չի ունենա ուրիշ պետությունների տերիտորիայում։ Իրենց զինված ուժերը կրճատում են նաև Լեհաստանը, Չեխոսլովակիան, Ռումինիան և դեմոկրատական լագերի մյուս երկրները։

Խաղաղասեր պետությունների այդ գործնական քայլերը ջերմ հավանության արժանացան բոլոր նրանց կողմից, ովքեր իսկապես ձգտում են խաղաղության։ Միջազգային լայն հասարակայնությունը ամենայն իրավամբ պահանջում է, որ արևմտյան տերությունները նույնպես գործով հաստատեն իրենց խաղաղասիրական հայտարարությունները սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, իրենց զինված ուժերի թիվը կրճատելու, ուրիշ երկրների տերիտորիաներում ունեցած ռազմական բազաները վերացնելու մասին։

Սովետական Միությունը եռանդուն միջոցներ է ձեռք առնում բոլոր գծերով միջազգային կոնտակտի և կապերի զարգացման համար։ Լայն թափ են ստացել օտարերկրյա պետությունների կառավարական դելեգացիաների, պետական և հասարակա-

կան գործիչների կողմից դեպի Սովետական Միություն կատարվող ուղևորությունները։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի նախաձեռնությամբ ավելի մեծ մասշտաբով է ծավալվում պառլամենտական դելեգացիաների փոխանակումը։ Հենց միայն վերջերս Սովետական Միություն այցելեցին Անգլիայի, Հնդկաստանի, Շվեդիայի, Հարավսլավիայի, Սիրիայի, Յապոնիայի, Բելգիայի, Ֆրանսիայի, Լյուքսեմբուրգի պառլամենտների դելեգացիաները։ Տարեց-տարի աճում է ՍՍՌՄ այցելող արտասահմանյան բանվորական դելեգացիաների, կուլտուրական և հասարակական այլ գործիչների, ինչպես նաև գեղարվեստական և սպորտային կոլեկտիվների թիվը։ Միայն վերջին երեք տարում աշխարհի 97 երկրներից մեր երկիրն են այցելել արտասահմանյան 1.428 հասարակական դելեգացիաներ, գեղարվեստական և սպորտային կոլեկտիվներ, որոնց կազմի մեջ եղել է ավելի քան 22.700 մարդ։

Միջազգային լարվածությունը թուլացնելու ուղղությամբ Սովետական Միության կողմից կիրառվող միջոցառումները, որոնք արժանանում են սոցիալիստական լագերի երկրների և բոլոր խաղաղասեր ուժերի ակտիվ պաշտպանությանը, խոր ազդեցություն են



գործում միջազգային իրադրության վրա։ Երկար տարիների «սառը պատերազմից» հետո նախադրյալներ են ստեղծվում պետությունների միջև փոխըմբռնում և վստահություն հաստատելու համար։

Բուրժուական լագերի ավելի լրջախոհ ներկայացուցիչների համար վերջերս գնալով ավելի ակներև է դառնում այն հանգամանքը, որ «ուժի դիրքերից» վարվող քաղաքականությունը, որ վերջին տարիներս արտաքին - քաղաքականության հիմնական սկզբունքն էր հանդիսանում ամերիկա-անգլիական խմբավորման երկրների համար, փակուղու առաջ է կանգնած։ Դրա հետ միասին արևմտյան տերությունների պետական գործիչները չէին կարող հաշվի չնստել այն փաստի հետ, որ բոլոր երկրներում անշեղորեն աճում է ժողովրդական շարժումը խաղաղության համար, միջազգային հարցերը բանակցությունների և համաձայնության միջոցով լուծելու համար։

Հենց այդ ամենն էլ, միասին վերցրած, պայմանավորեց այն շրջադարձը, որ վերջերս տեղի ունեցավ միջազգային հարաբերություններում։ Այդ շրջադարձը իր ցայտուն արտահայտությունը գտավ ՍՍՌՄ, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կառավարություն-

ների Ղեկավարների Խորհրդակցությունում, որը կայացավ 1955 թվականի հուլիսին Ժնևում։ Ժնևյան խորհրդակցությունը կարևոր քայլ հանդիսացավ տարբեր հասարակական սիստեմների պատկանող պետությունների միջև վստահություն և համագործակցություն հաստատելու ճանապարհին։ Չորս տերությունների կառավարությունների Ղեկավարների Խորհրդակցության դրական արդյունքները վկայում են, որ խաղաղության պահպանման և ամրապնդման հեռանկար է բացվում։ Այդ հնարավորությունը իրականություն կարող է դառնալ, եթե բոլոր պետությունները և, առաջին հերթին, Արևմուտքի առաջատար տերությունները պաշտպանեն Սովետական Միության ջանքերը, նպաստեն համագործակցության և փոխըմբռնման՝ Ժնևի խորհրդակցությունում դրսևորված ոգու պահպանմանը։

Այս պայմաններում խաղաղասեր ժողովուրդները իրենց գլխավոր խնդիրն են համարում՝ է՛լ ավելի ուժեղացնել պայքարը խաղաղության ամրապնդման համար։

Սովետական մարդիկ իրավամբ հպարտանում են այն փառավոր դերով, որ խաղում է մեր Հայրենիքը խաղաղության համար մղվող վեհ պայքարում։ Յուրաքանչյուր սովետա-



կան մարդ երջանիկ է նրանով, որ իր Հայրենիքը բարձր է պահում լենինյան սուրբ դրոշը—խաղաղության և ժողովուրդների բարեկամության դրոշը։ Ֆաբրիկաներում և գործարաններում, կոլտնտեսություններում և սովխոզներում, դպրոցներում և լաբորատորիաներում կատարած իրենց անձնվեր աշխատանքով սովետական մարդիկ, որոնց առաջնորդում է իմաստուն Կոմունիստական պարտիան, անդուլ կերպով ամրապնդում են իրենց Հայրենիքի հզորությունը։ Նրանք գիտեն, որ դա իրենց գլխավոր ավանդն է ամբողջ աշխարհի խաղաղության պահպանման և ամրապնդման գործում։

Հենվելով մեր ժողովրդի և բոլոր խաղաղասեր ժողովուրդների հզոր պաշտպանության վրա, Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը այսուհետև ևս անշեղորեն կվարեն լենինյան արտաքին քաղաքականություն-միջազգային խաղաղ համագործակցության քաղաքականություն, ամբողջ աշխարհում կայուն ու տևական խաղաղություն հաստատելու քաղաքականություն։



1847-55

# ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՁՄԵՌՈՒՄԸ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ԱՆՑԿԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում կոլտնտեսականների, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների ակտիվ մասնակցությամբ մշակված կոլտնտեսությունների հեռանկարային պլաններում նախատեսվում է կաթի և բրդի արտադրության ավելացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի առաջադրանքները կատարել 1958 թվականին, մսինը և ձվինը՝ 1959 թվականին, այսինքն՝ սահմանված ժամկետից մեկ—երկու տարի շուտ։

Ավարտվեց անասնաբուծության տնտեսական տարին։ 1954—1955 տնտեսական տարվա տվյալները վկայում են, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղացիությունը պարտիայի առաջադրանքների հաջող կենսագործման համար մղվող պայքարում նշանակալի արդյունքների է հասել անասնաբուծական մթերքների արտադրությունն



ավելացնելու գործում։ Հիշյալ ժամանակամիջոցում, նախորդ տարվա համեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կաթի արտադրությունը ավելացել է 25,6 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում աճեց նաև մսի, բրդի և ձվի արտադրությունը։

Այդ բանին նպաստեց այն հանգամանքը, որ ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ ձմեռային շրջանում բարելավեցին հանրային անասունների պահպանումը, խնամքը և կերակրումը։ Հանրային անասնաբուծության զարգացման և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում լուրջ հաջողություններ են ձեռք բերել Սևանի, Ղուկասյանի և Շահումյանի շրջանների կոլտնտեսությունները։

Այդ ամենի շնորհիվ այս տարի շատ կոլտնտեսություններ հնարավորություն ունեցան ժամկետից շուտ կատարելու պետական մթերումների պլանները և ավելի շատ անասնաբուծական մթերքներ առանձնացնել կոլտնտեսականների աշխօրերին բաշխելու համար։ Սակայն, այն ամենը, ինչ արվել է անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ, միայն սկիզբն է առաջիկա մեծ աշխատանքի։

Անասնաբուծական մթերքների արտադրության զգալի ավելացման համար մղվող պայքարում կարևորագույն էտապ է հանդիսանում անասունների ձմեռման՝ անասնաբուծության այդ ամենակարևոր ժամանակաշրջանի օրինակելի կազմակերպումն ու անցկացումը։ Հայաստանի պայմաններում մսուրային շրջանը սովորաբար տևում է 180—200 օր։ Անասունները ամառվա արոտային պահպանությունից մսուրային պանհապնման են փոխադրվում գեր վիճակում, մթերատվության ավելի բարձր ցուցանիշներով։ Բավական է ասել, որ 5 ամսվա արոտային շրջանում, Հայաստանի կոլտնտեսությունները ստանում են տարվա ընթացքում կթվող կաթի քանակի 65—70 տոկոսը և մսի քաշաճի զգալի մասը։ Մինչդեռ անասունների ձմեռումը հաջող նախապատրաստելու և անցկացնելու դեպքում առաջավոր կոլտնտեսությունները և սովխոզները մսուրային շրջանում ապահովում են կենդանիների մթերատվությունը արոտային շրջանի մակարդակի վրա։ Հաշվումները ցույց են տալիս, որ անասնաբուծական մթերքների արտադրության ամառային շրջանի մակարդակը մսուրային շրջանում պահպանելու դեպքում՝ կարելի է կրկը-



նապատկել ստացվող կաթի քանակը և զգալիորեն ավելացնել մսի արտադրությունը։

Անասունների մթերատվության արոտային շրջանի մակարդակի պահպանումը մսուրային շրջանում՝ պետական մեծ կարևորություն ունեցող գործ է։ Դրա համար տեղերում կան բոլոր անհրաժեշտ պայմաններն ու հնարավորությունները։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ճնշող մեծամասնությունն այս տարի կուտակել է բավականաչափ անասնակեր, մանավանդ սիլոս, կերի ռեսուրսները առաջին անգամ համալրվում են եգիպտացորենի կոնսերվացված կողրերով, շահագործման են հանձնվել մեծ քանակությամբ նոր, տիպային, բարեկարգված անասնապահական շենքեր, ուժեղացվել է կոլտնտեսությունների ղեկավարությունը, ագրոնոմները և զոոտեխնիկները անմիջական աշխատանքի են փոխադրվել կոլտնտեսություններում։ Այս ամենը և գյուղատնտեսության աշխատավորների աշխատանքային ու քաղաքական բարձր ակտիվությունը լուրջ նախադրյալներ են հանդիսանում, որպեսզի այս տարի անհամեմատ ավելի լավ կազմակերպվի ու անցկացվի անասունների ձմեռումը և ապահովվի գյուղատնտեսական կենդանիների բարձր մթերատվությունը։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում անասունների մասսայական ծինը սկսվում է փետրվար—ապրիլ ամիսներին։ Այստեղից էլ հասկանալի է, որ անասնաբուծության հետագա զարգացման մակարդակը, անասնաբուծական մթերքների արտադրության աճը մեծ չափով կախված է անասունների ծնի կամպանիայի հաջող կազմակերպումից և անցկացումից։

Անասունների ձմեռումը հաջողությամբ անցկացնելու վճռական պայմաններից մեկը ամբողջ մսուրային շրջանում անասունները անհրաժեշտ քանակությամբ կոշտ, հյութալի և խտացված կերերով ապահովելն է։ Ռեսպուբլիկայում մեծ է այն կոլտնտեսությունների և սովխոզների թիվը, որոնք հաջողությամբ են լուծել կերի կուտակման խնդիրը՝ հանրային անասնաբուծությունն ապահովել են բազմազան կերերով և մի մասն էլ առանձնացրել են կոլտնտեսականների աշխօրերի վրա բաշխելու համար՝ նրանց անձնական սեփականություն հանդիսացող անասունները նույնպես կերով ապահովելու։

Ազիզբեկովի, Ախտայի, Գորիսի, Սիսիանի և մի շարք այլ շրջանների շատ կոլտնտեսություններ բավականին լավ աշխատանք են տարել կերի կուտակման ուղղությամբ։ Դըժ-



բախտաբար ռեսպուբլիկայում քիչ չեն նաև այն կոլտնտեսությունները, որոնք բավականաչափ կերեր չեն կուտակել և միջոցներ ձեռք չեն առել կերերի կուտկման ուղղությամբ եղած հնարավորությունները լրիվ օգտագործելու համար։ Անհրաժեշտ է մոտակա օրերի ընթացքում լրիվ հավաքել և ֆերմաների տերիտորիան փոխադրել ամբողջ խոտը, ծղոտը, հարդը, սիլոսացնել եգիպտացորենի կողրերը և կանաչ մասսան, ավարտել կերի արմատապտուղների բերքահավաքը, առանձնացնել անհրաժեշտ քանակությամբ հացահատիկային կերեր և կարտոֆիլ։ Դա բոլոր կոլտնտեսականների, գյուղատնտեսության մեխանիզատորների և մասնագետների անհետաձգելի խնդիրն է։

Հանրային անասնաբուծության հաջող ձմեռման համար կարևոր նշանակություն ունեն անասունների պահպանման պայմանները։ Այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կատարվում է մեծ քանակությամբ տիպային, բարեկարգ կովանոցների, ոչխարանոցների, խոզանոցների, հորթանոցների, թռչնանոցների և անասնապահական այլ շենքերի շինարարություն, որը պլանով նախատեսված ծավալը գերազանցում է գրեթե 60 տոկոսով։ Անասնապահական շատ

շենքեր արդեն շահագործման են հանձնվել։ Սակայն դրանց մի զգալի մասի շինարարությունը դեռ չի ավարտվել։ Անասնապահական շենքերի շինարարությունը լրջորեն ետ է մնում Նոյեմբերյանի, Կիրովականի, Աշտարակի և մի քանի այլ շրջանների կոլտնտեսություններում։

Անհրաժեշտ է անհապաղ վճռական միջոցներ ձեռք առնել և ապահովել անասնապահական շենքերի շինարարության ավարտումն ու շահագործման հանձնումը։ Դրա հետ միասին անհրաժեշտ է ավելի լուրջ ուշադրություն դարձնել գոյություն ունեցող անասնապահական շենքերի վերանորոգմանն ու բարեկարգմանը։

Ամեն մի գործի հաջողություն կախված է կադրերից։ Ուստի անհրաժեշտ է, որպեսզի կոլտնտեսություններում բացառիկ հոգատարություն ցուցաբերվի անասնաբուծական ֆերմաները որակյալ, գործիմաց կադրերով կոմպլեկտավորելու նկատմամբ։ Անհրաժեշտ է սիստեմատիկ օգնություն ցույց տալ այդ կադրերին՝ զոոտեխնիկական գիտության հիմունքներին տիրապետելու և արտադրության մեջ այն ամենը լայնորեն արմատավորելու գործում, ինչ նոր է, առաջավոր։ Հարկավոր է բոլոր կոլտնտեսականներին բացատրել և



լիովին կիրառել անասնաբուծության զարգացման գործում կոլտնտեսականների ու մեխանիզատորների նյութական շահագրգռվածության այն միջոցները, որ հանձնարարել են պարտիան և կառավարությունը։

Ֆերմաների ամբողջ աշխատանքը պետք է տարվի պլանով։ Մասնագետները պետք է յուրաքանչյուր անասնաբուծական ֆերմայի համար կազմեն օրվա ռեժիմ և ապահովեն նրա անշեղ կատարումը։

Անասնաբուծության տնտեսական նոր տարին պետք է դառնա անասնաբուծական մթերքների հետագա ավելացման գործում նոր հաջողությունների տարի։

Անասունների ձմեռման հաջող նախապատրաստումը և կազմակերպված անցկացումը կհանդիսանա Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարը արժանավայել կերպով դիմավորելու համար անասնաբույծների միջև ծավալված սոցիալիստական մրցության լավագույն արգասիքը։

---

# ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԵՂԱԲԱՇԽՄԱՆ ՄԱՍԻՆ

Պ. ՈՍԿԵՐՉՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

Արտադրողական ուժերի սոցիալիստական տեղաբաշխման ճիշտ վերլուծությունը տվել են մարքսիզմի կլասիկները իրենց բազմաթիվ աշխատությունների մեջ, որի կիրառումը կոնկրետ կերպով իրականացավ սոցիալիստական շինարարության պրակտիկայում։

Արտադրողական ուժերի անհամաչափ տեղաբաշխումը կապիտալիզմի օրենքն է, որն ամենից առաջ արտահայտվում է արդյունաբերության կարևորագույն ճյուղերի անհամաչափ կուտակման ձևով։ Բավական է ասել, որ կապիտալիստական 4 երկրներ՝ ԱՄՆ, Անգլիան, Ֆրանսիան և նախապատերազմյան Գերմանիան, որոնք բռնում էին կապիտալիստական աշխարհի տերիտորիայի 8 տոկոսը, իսկ բնակչությունը կազմում էր 15 տոկոսը, տալիս էին կապիտալիստական



աշխարհի ամբողջ արդյունաբերության արտադրանքի 76 տոկոսը, պողպատի ձուլման՝ 60 տոկոսը, մեքենաշինության՝ 89 տոկոսը, քիմիական արդյունաբերության արտադրանքի՝ 80 տոկոսը։

Հնդկաստանը և Եգիպտոսը կապիտալիստական աշխարհում համարվում են բամբակի հումքի գլխավոր երկրներ. սակայն, ինչպես Հնդկաստանը, այնպես և Եգիպտոսը իրենց արտադրած բամբակի հումքի միայն 8 տոկոսն են վերամշակում։

Ցարական Ռուսաստանի արդյունաբերությունը հիմնականում կենտրոնացված էր Պետերբուրգում, Մոսկվայի և Ուկրաինայի նահանգներում։ 1912 թվականի տվյալներով նշված նահանգները տալիս էին ամբողջ արդյունաբերության արտադրանքի 66,2 տոկոսը, իսկ Արևելքի հսկայական շրջանները՝ ներառյալ Ուրալը և Միջին Ասիան, տալիս էին 8,2 տոկոսը։

Էնգելսը խոսելով արդյունաբերության տեղաբաշխման հարցի մասին, ամենայն պարզությամբ ցույց է տալիս, որ «իր արտադրողական ուժերը միասնական մի ընդհանուր պլանով ներդաշնակության մեջ դնող հասարակությունը միայն կարող է արդյունաբերությանը հնարավորություն ընձեռնել, որպեսզի

սա այնպիսի դասավորությամբ տարածվի
ամբողջ երկրում, որ դա միանգամայն հա-
մապատասխանի արդյունաբերության բար-
գավաճման, ինչպես և արտադրության մյուս
էլեմենտների պահպանման ու զարգացման
պահանջներին»։

Մեր երկրում արտադրողական ուժերի սո-
ցիալիստական տեղաբաշխման հարցը ան-
միջականորեն դրվեց ռեոլյուցիայի հաղթա-
նակից հետո։ Դեռ 1918 թվականի ապրիլին
Լենինը Ժողովրդական տնտեսության գերա-
գույն խորհրդին հանձնարարեց ստեղծել
մասնագիտական հանձնաժողովներ, արագ
կազմելու արդյունաբերության վերակազմու-
թյան և տնտեսական վերելքի պլանը, հաշվի
առնելով «արդյունաբերության ռացիոնալ
տեղաբաշխումը Ռուսաստանում հումքի մո-
տիկության և աշխատանքի ամենանվազա-
գույն կորստի հնարավորության տեսակե-
տից՝ հումքի վերամշակությունից կիսաֆաբ-
րիկատների վեռամշակման բոլոր հաջորդա-
կան աստիճաններին անցնելիս ընդհուպ
մինչև պատրաստի արդյունքի ստացումը»։

Ազգային ծայրամասերում արդյունաբե-
րության պլանաչափ զարգացման հարցը
քննարկվեց մեր պարտիայի 10-րդ համագու-
մարում և ձեռնարկվեց կոնկրետ միջոցա-



ռումներ Արևելյան և Հարավ-արևելյան շըր-
ջաններում արդյունաբերությունը զարգաց-
նելու համար։ Արդեն 1925—1928 թվական-
ներին արդյունաբերության հիմնական ֆոն-
դերը Ղազախստանում աճեցին 200 տոկո-
սով, Սիբիրում՝ 100 տոկոսով, Հեռավոր Ա-
րևելքում՝ 60 տոկոսով, իսկ Լենինգրադի
մարզում՝ 10 տոկոսով. կառուցվեցին Ստա-
լինգրադի և Չելյաբինսկի տրակտորային
գործարանները, մեքենաշինական գործա-
րաններ՝ Սվերդլովսկում, կոմբայնի գործա-
րաններ՝ Սարատովում և Նովոսիբիրսկում,
տեքստիլ ֆաբրիկաներ՝ Թուրքմենստանում,
Հայաստանում, ածխամետալուրգիական երկ-
րորդ բազան՝ Արևելքում, մետալուրգիական
կոմբինատը՝ Ուրալ-Կուզնեցկում և այլն։

Առաջին հնգամյակի տարիներին հիմնովին
վերակառուցվեցին արդյունաբերական հին
ձեռնարկությունները և լայն մասշտաբով
ծավալվեց խոշոր արդյունաբերական ձեռ-
նարկությունների շինարարությունը հումքի
վայրերում։ 1937 թվականի վերջին երկրի
արդյունաբերության ամբողջ արտադրանքի
80 տոկոսը ստացվեց նոր կառուցված կամ
ամբողջովին վերակառուցված ձեռնարկու-
թյուններից։ Հումքի պաշարներին մոտիկ
կառուցվեցին բոլորովին նոր քաղաքներ։

Արտադրողական ուժերի սոցիալիստական տեղաբաշխման հարցը քննարկվեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 18-րդ համագումարում, որը նշեց նրա կոմպլեքսային զարգացման խնդիրները։ Կենսագործելով այդ որոշումները, մեր երկրի տնտեսապես հետամնաց շրջանները զգալի չափով զարգացան և այժմ չկա մի մարզ, կամ ազգային ռեսպուբլիկա, որը չունենա իր մեքենաշինական արդյունաբերությունը։

Արտադրողական ուժերի սոցիալիստական տեղաբաշխման կարևորագույն հարցերից մեկը հանդիսանում է նախկինում հետամնաց ազգային ռեսպուբլիկաների, մարզերի տնտեսական և կուլտուրական վերելքի հարցը։ Եթե ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության բոլոր ճյուղերի համախառն արտադրանքը 1940 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել էր 10,9 անգամ, ապա Ուրալում, Սիբիրում, Հեռավոր Արևելքում աճել է 14,5 անգամ, Ղազախստանում՝ 22,3 անգամ, Վրաստանում՝ 26,4 անգամ։ Հայաստանում 1954 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, արդյունաբերությունն աճել է 87 անգամ. 1955 թվականին Հայաստանը յուրաքանչյուր 4 օրում ավելի



շատ արդյունաբերական արտադրանք է տալիս, քան ամբողջ 1913 թվականը։ Քարածխի արդյունաբերությունը ՍՍՌՄ-ում 1940 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել է 5—7 անգամ, Հեռավոր Արևելքում, Արևելյան Սիբիրում և Միջին Ասիայում՝ 17—35 անգամ։

Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1940 թվականին, 1928 թվականի համեմատությամբ, աճել է Հեռավոր Արևելքում, Արևելյան և Արևմտյան Սիբիրում, Ուրալում 19—31 անգամ, Պովոլժյեում, Միջին Ասիայում և Ղազախստանում՝ 13—20 անգամ, Կարելո-ֆիննական ռեսպուբլիկայում՝ 21,7 անգամ։ Հայաստանի էլեկտրակայանները 1955 թվականին մեկ օրում արտադրում են այնքան էլեկտրաէներգիա, որքան արտադրվում էր 1913 թվականին։

1954 թվականին արևելյան շրջաններում արտադրվել է երկրի ամբողջ արդյունաբերության արտադրանքի մոտավորապես մեկ երրորդը, արդյունահանվել է նավթի ավելի քան 60 տոկոսը և ածուխի գրեթե 50 տոկոսը, պողպատի ու գլանվածքի ամբողջ քանակի կեսից ավելին և էլեկտրաէներգիայի ավելի քան 40 տոկոսը։ Սովետական Միության արդյունաբերության արտադրանքի ծավալը 1954

թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել է 2,8 անգամ, իսկ արևելյան շրջաններում՝ 4 անգամ։ Հայաստանում մեծ զարգացում է ստացել մեքենաշինությունը։ 1954 թվականին 66—70 տոկոսով ավելի շատ տրանսֆորմատորներ, գեներատորներ, մետաղահատ հաստոցներ է արտադրվել, քան 1950 թվականին։

Վճռական քայլ է կատարված սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու և հատկապես հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների ավելացնելու ուղղությամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշմամբ նախատեսված է 1956 թվականին խամ ու խոպան հողերում ցանքատարածություններն առնվազն հասցնել 28—30 միլիոն հեկտարի։

Ետպատերազմյան երկու հնգամյակների տարիներին խոշոր շինարարական աշխատանք ծավալվեց երկրի հումքի, էլեկտրաէներգիայի և բնական հանածոների հարուստ պաշարներ ունեցող շրջաններում։ Սոցիալիզմի երկրում, որտեղ տիրապետում է արտադրության միջոցների հանրային սեփականությունը և ժողովրդական տնտեսության զարգացումը վարվում է պետական միասնական



պլանով, լայն հնարավորություններ կան արտադրության մասնագիտացման, կոոպերացման և լիակատար շահավետության համար։

Արտադրության մասնագիտացման և կոոպերացման առավելությունը կայանում է նրանում, որ նա նպաստում է տեխնիկայի զարգացմանը, հնարավորություն է ստեղծում խոշոր մասշտաբներով օգտագործել բարձր արտադրողական սարքավորումները, բարելավել առաջավոր տեխնոլոգիան, ավտոմատացնել արտադրության աշխատատար պրոցեսները և տնտեսական առանձին շրջաններում ավելի խելացի, տնտեսվարորեն օգտագործել արդյունաբերական ռեսուրսներն ու կրճատել տրանսպորտային ծախսերը։

Սոցիալիստական արդյունաբերության ձեռնարկությունների մասնագիտացումն ու կոոպերացումը մեծ չափով կնպաստեն ավելացնելու արտադրանքի թողարկումը, բարելավելու արտադրանքի որակը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և իջեցնելու արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը։

ՍՄԿԿ Կենտկոմի Հուլիսյան պլենումը խիստ կերպով դատապարտեց մեր շատ ձեռնարկությունների արտադրության ունիվեր-

սալ պրակտիկային և խնդիր դրեց, որպեսզի այդ ձեռնարկությունները լինեն հստակ ու խիստ մասնագիտացված, որպեսզի նրանք ազատվեն ամենաբազմազան արտադրանք տալուց, որոնք բնորոշ չեն տվյալ ձեռնարկության պրոֆիլին։ Այժմ պարտիան և կառավարությունը պահանջում են ավելի համարձակորեն, ավելի վճռականորեն կատարել ձեռնարկությունների մասնագիտացումը և պլանային կոոպերացումը։

Արդյունաբերության կոոպերացումը մշտական կապ է ստեղծում ձեռնարկությունների միջև այս կամ այն տեսակի արտադրանքի թողարկման գործում, սակայն ամեն մի ձեռնարկություն համարվում է ինքնուրույն և տնտհաշվարկային։

Սոցիալիստական արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը լայն հնարավորություններ կստեղծի մեր արդյունաբերության ռեզերվները լրիվ օգտագործելու և նրա հզոր վերելքն ապահովելու համար։ ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները նոր թափ հաղորդեցին մեր երկրի արտադրողական ուժերի տեղաբաշխմանն ու զարգացմանը և ուղիներ նշեցին այդ ասպարեզում եղած թերությունները արագ վերացնելու համար։

---



# ՍՏԱՆՈՒՄ ԵՆՔ ԲԱՄԲԱԿԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ

Էջմիածնի Միկոյանի անվան Լենինի շքանշանակիր կոլտնտեսության դաշտավարական № 4 բրիգադայի բրիգադիր Հ. Ալոյանի պատմածը

Մեր կոլտնտեսությունը ամեն տարի պետությանը հանձնած բամբակի հումքի դիմաց ստանում է միլիոնավոր ռուբլիների եկամուտ։ Հաշվի առնելով այդ կարևոր հանգամանքը, թե՛ մեր կոլտնտեսության ղեկավարությունը և թե՛ կոլտնտեսականները իրենց ազնիվ աշխատանքով պայքարում են ամեն մեկ հեկտարից ավելի շատ բամբակ ստանալու համար։ Սակայն միայն ազնիվ աշխատանքը դեռ քիչ է բամբակի պլանտացիաներից ավելի բարձր բերք ապահովելու համար։ Իմ բրիգադիրության քսանամյա փորձը ցույց է տալիս, որ երկար տարիներ միևնույն եղանակով ու քարացած մեթոդներով բամբակ մշակելու դեպքում, առանց ագրոբիոլոգիական գիտության վերջին, ավելի առաջավոր մեթոդների գործա-

դրման՝ հնարավոր չէ հասնել ավելի բարձր բերքատվության։ Այդ նպատակով, ելնելով պարտիայի ու կառավարության որոշումներից, մենք այս տարի մեր բրիգադային հանձնված 62 հեկտարից 20-ի վրա կիրառեցինք բամբակի ցանքի ու մշակության քառակուսի-բնային եղանակը։ Իհարկե, առանց փորձված մարդկանց խորհրդի մենք ոչինչ անել չէինք կարող։ Մեզ օգնության հասավ Տեխնիկական կուլտուրաների գիտահետազոտական ինստիտուտի բրիգադայի ղեկավար, բիոլոգիական գիտությունների թեկնածու ընկ. Ս. Կարագյոզյանը։ Թե որն է այդ մեթոդի կիրառման առավելությունը և ինչ արդյունքներ տվեց այն,— ահա այդ մասին է, որ ես կուզեի պատմել։

Դեռ անցյալ տարվանից, բամբակի բերքահավաքն ավարտելուց անմիջապես հետո, մենք ձեռնամուխ եղանք հողամասի մշակությանը։ Սկզբում հեռացրինք բամբակենու ցողունները, ապա ամբողջ դաշտը պարարտացրինք։ Յուրաքանչյուր հեկտարի վրա շաղ տվեցինք 500 կիլոգրամ սուպերֆոսֆատ, դրանից հետո կատարեցինք 25—30 սմ. խորությամբ վար։ Գարնանը, մարտի 20-ից, երբ հողը արդեն քեշի էր եկել, մենք սկսեցինք նախացանքային մշակությունը։ Սկզբ-



բում ձեռքով հավաքեցինք աշնան վարի հետևանքով հողի երես դուրս եկած քարերը և ղանղուրդանի ու չայիրի կոճղարմատները։ Հետագա աշխատանքներն ընթացան չիզելացման (փխրեցում), հարթեցման և փոցխման ուղղությամբ՝ կոշտերը մանրացնելու նպատակով։

Մինչև ցանքի սկսելը, գոմոզ հիվանդության դեմ պայքարելու նպատակով, սերմերը նախօրոք ախտահանեցինք ֆորմալինի մեկ տոկոսանի լուծույթով։ Եվ որպեսզի ֆորմալինը ավելի լավ ներգործեր հնարավոր վարակված սերմերի վրա, սերմերը 2—3 ժամ պահեցինք ծածկոցի տակ, ապա փռեցինք, որ չորանան և 6—8 ժամ անցնելուց հետո տեղափոխեցինք դաշտ՝ ցանքի համար։

Երբ հողի վերին շերտերի ջերմությունը հասել էր 12—14 աստիճանի (ապրիլի 15-ից), սկսեցինք բամբակի մասսայական ցանքը։ Ցանքը կատարվեց № 108—ֆ նոր սորտի սերմերով, որովհետև դրանք մեր տեղական № 1298 սորտի համեմատությամբ աչքի են ընկնում թե՛ իրենց բերքատվությամբ և թե՛ կնգուղների խոշորությամբ։ Բացի այդ № 108—ֆ սորտի սերմերից ստացվող բամբակը իր թելի երկարությամբ ու որակով անհամեմատ ավելի լավն է ու

հեշտ է հավաքվում, քան տեղական սորտինը։ Այստեղից էլ պարզ է դառնում, որ այդ նոր սորտի արմատավորումը մեծ ապագա է խոստանում բամբակացան կոլտնտեսությունների եկամտաբերությունը համարյա կրկնակի չափով բարձրացնելու ուղղությամբ։

Ցանքը կատարեցինք շարքը շարքից 45 սմ. հեռավորության վրա վեցշարքանի շարքացանով, որը միաժամանակ ակոսներ էր հանում բամբակենին ոռոգելու համար։ Ցանքն ավարտելուց հետո, ջրումը ավելի հաջող կատարելու նպատակով դաշտի լայնությամբ, առվահան տրակտորով փորեցինք ջրատար առուներ՝ միմյանցից 200 մետր հեռավորության վրա։ Քսան հեկտար բամբակենու ջուրը մենք ավարտեցինք աշխատանքային 5 օրում, նախատեսված 7 օրվա փոխարեն։ Երբ բամբակենին լրիվ ծլել էր և հողը քեշի եկել, սկսեցինք հողի երկու ուղղությամբ՝ երկարությամբ և լայնությամբ մշակումը. նախ՝ դաշտի լայնությամբ, շարքերին ուղղահայաց կատարեցինք կուլտիվացիա, որի ժամանակ հեռացվեցին ավելորդ բույսերը և բույսերի դասավորությունը ստացվեց քառակուսի-բնային։ Այնուհետև, բների մեջ ավելորդ ծիլերը հեռացնելով, վերջնականապես թողեցինք երկուական



բույս, ապահովելով նրանց դասավորությունը 45×45 սմ. սխեմայով։ Այս միջոցով հեկտարի վրա ապահովվեց 110—120 հազար բույս, նախկին 70—80 հազարի դիմաց։

Քառակուսի-բնային եղանակը մեզ հնարավորություն տվեց ցանքի մշակության մեքենայացված աշխատանքները կատարել երկու ուղղությամբ, որը պայմաններ ստեղծեց բամբակենու առաջին, երկրորդ և երրորդ մշակության ժամանակ աշխատող ձեռքի պահանջը կրճատել 50 տոկոսով։

Երկրորդ մշակությունից հետո, հունիսի 10-ից սկսեցինք առաջին սնուցումը՝ հեկտարին տալով 300 կիլոգրամ սուպերֆոսֆատ, 200 կիլոգրամ ամոնիակային սելիտրա և մոտ կես տոննա գոմաղբ։ Ապա տրվեց վեգետացիոն առաջին ջուրը։ Ջրի ընթացքում նկատելի դարձավ, որ մեր ոչ քառակուսի-բնային եղանակով ցանած բամբակենու վրա ջուրը հավասարապես չէր խոնավացնում դաշտը, շատ բույսեր մնում էին ջրից զուրկ, որովհետև սովորականի դեպքում, այսինքն 70 սմ. միջշարքային տարածություններում բամբակենու շարքերը գտնվում էին ակոսից 20—25 սմ. հեռավորության վրա, իսկ քառակուսի-բնայինի դեպքում ավելի մոտ՝ 10—15 սմ. հեռավորու-

թյան վրա, որպիսի հանգամանքը նույնպես խոշոր դեր է խաղում բերքատվության բարձրացման գործում։ Հուլիսի առաջին կեսին բույսերին տվեցինք երկրորդ սնուցումը նույն քանակի պարարտանյութերով, ինչ տրված էր առաջին սնուցման ժամանակ։ Մինչև օգոստոսը չոռի դեմ պայքարը տարվեց պոլիսուլֆատ սրսկելու միջոցով, իսկ այնուհետև՝ կատարվեց ծծումբով 3 անգամ փոշոտում։

Հուլիսի վերջերին, երբ բամբակենին արդեն ուներ 10—12 բերքատու ճյուղ, մենք կատարեցինք առաջին ծերատումը։ Այդ միջոցառումով մենք նախ նպաստեցինք բամբակենու կնգուղների խոշորացմանը, նվազեցրինք ու մինիմումի հասցրինք պտղալիժումը և ապահովեցինք սննդանյութերը բույսի կողմից ավելի նպատակահարմար օգտագործելուն։ Որոշ ժամանակ անց կատարեցինք բամբակենու երկրորդ ծերատումը, որը խիստ բարերար ազդեցություն ունեցավ պտղի հասունացման և կնգուղների շուտ բացվելու վրա։

Ելնելով բամբակենու և հողի պահանջից, վեգետացիայի ընթացքում, հիմնական մշակությունների գծով մենք կատարեցինք հետևյալ միջոցառումները՝ հինգ անգամ



կուլտիվացիա, որից երեքը՝ դաշտի երկարությամբ, իսկ երկուսը՝ լայնությամբ, 6 անգամ ձեռքի փխրեցում, մեկ անգամ քոլքաշ, երկու անգամ սնուցում ու ծերատում և 8—9 անգամ ջուր։ Ըստ որում, այդ ջրերի մի մասը տվեցինք ոչ բոլոր միջշարքային տարածություններին, այլ մեկընդմեջ, նկատի ունենալով, որ 45 սմ. միջշարքային տարածության դեպքում շարքերն այնքան են իրար մոտիկ լինում, որ էլ անհրաժեշտություն չի զգացվում բոլոր միջշարքային տարածություններով ջուր բաց թողնելու։

Բամբակենու երկրորդ ծերատումը վերջացնելուց հետո բրիգադայի բոլոր անդամներով սկսեցինք նախապատրաստվել բերքահավաքին։ Կարճ ժամանակում ձեռք բերինք անհրաժեշտ քանակությամբ գոգնոցներ, բարդաններ, կշեռք ու կշռաքարեր։ Եվ սեպտեմբերի 11-ից սկսեցինք շանաքը։ Սույն թվականի հոկտեմբերի 15-ի տվյալներով մեր քառակուսի-բնային եղանակով ցանված հողամասի յուրաքանչյուր հեկտարից պետությանն ենք հանձնել 28 ցենտներ առաջին տեսակի բամբակ, որը արդեն երեք ցենտներով գերազանցում է տարվա պլանային առաջադրանքը։ Մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի

38-րդ տարեդարձի պատվին ծավալված նախատոնական սոցիալիստական մրցության մեջ, ստանձնել ենք ավելի բարձր պարտավորություններ՝ յուրաքանչյուր հեկտարից հավաքել 40—45 ցենտներ բամբակ։ Եվ մենք պատվով կկատարենք մեր խոստումը։

Քառակուսի-բնային եղանակով ցանքի առավելությունը հաստատվեց մեր բրիգադայի փորձով։ Կասկածից դուրս է, որ եկող տարի ոչ միայն մեր, այլև Հայաստանի շատ կոլտնտեսություններ բամբակի մշակությունը կսկսեն հենց այդ եղանակով։ Ազնվորեն պետք է խոստովանեմ, որ մենք այդ հաջողություններին չէինք հասնի, եթե մեզ օգնության չհասնեին սովետական առաջավոր ագրոբիոլոգիական գիտության տարածողները՝ հանձինս Տեխնիկական կուլտուրաների գիտա-հետազոտական ինստիտուտի աշխատողների։

---

# ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

*ԴԵԿԼԱՐԱՑԻԱ— Լատիներեն բառ է։ Բառացիորեն նշանակում է՝ հայտարարություն, ազդարարում, հռչակում։ Այդպիսի հայտարարությունները որևէ հարցի վերաբերյալ հռչակվում են կառավարության կամ քաղաքական պարտիայի անունից։ Օրինակ, Սովետական իշխանության առաջին տարիներին մեր երկրում հռչակվեց երկու դեկլարացիա, այն է՝ «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», որը հրապարակվեց 1917 թվականի նոյեմբերի 15-ին Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի ստորագրությամբ։ Այդ դեկլարացիան հռչակեց, որ Սովետական իշխանության քաղաքականությունը Ռուսաստանի ժողովուրդների փոխադարձ վստահության վրա հիմնված կամավոր ու ազնիվ դաշինքի քաղաքականությունն է։ Դեկլարացիան բնորոշեց Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ազգային քաղաքականության և մյուս կարևորագույն հարցերը։ Մյուս՝ «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան», որը նույնպես ստորագրել էին Լենինն ու Ստալինը, հաստատվեց Սովետների Համառուսաստանյան 3-րդ համագումարի կողմից 1918 թվականի հունվարին, որով Ռուսաստանը հռչակվեց բանվորական, զինվո-*

րական և գյուղացիական դեպուտատների Սովետների ռեսպուբլիկա, որտեղ ամբողջ իշխանությունը ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում պատկանում է աշխատավորներին՝ Հանձին Սովետների։ Այդ դեկլարացիայում առաջ քաշված բոլոր դրույթները կատարվեցին և սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում ամրապնդվեց ՍՍՌՄ Կոնստիտուցիայում։

Միջազգային իրավունքի մեջ դեկլարացիա է կոչվում այն փաստաթուղթը, որի մեջ հանդիսավոր կերպով հռչակվում են մեկ կամ մի քանի պետության ընդհանուր սկզբունքները միջազգային քաղաքականության կարևորագույն հարցերում։ Օրինակ՝ «Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի Կառավարությունների դեկլարացիան», որն ստորագրել են ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ա. Բուլգանինը և Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Ի. Բրոզ-Տիտոն։ Այդ դեկլարացիայում ամփոփված են 1955 թվականի մայիսի 27-ից մինչև հունիսի 2-ը ամենաբարձր մակարդակով տեղի ունեցած Սովետա-Հարավսլավական բանակցությունների արդյունքները։ Բանակցությունների հաջող ավարտումը նշանավորող այդ դեկլարացիան միջազգային մեծ նշանակություն ունեցող փաստաթուղթ է։





ՌԱՏԻՖԻԿԱՑԻԱ — Լատիներեն բառ է, որը բառացիորեն նշանակում է՝ վճռել, հաստատել։ Միջազգային պրակտիկայում սովորություն է դարձել, որ պայմանավորվող պետությունների լիազորների կնքած բոլոր առավել կարևոր պայմանագրերը հաստատվեն պետական իշխանության գերագույն օրգանի կողմից։ Պայմանագրի հաստատման այդ ակտը ընդունված է կոչել ռատիֆիկացիա (վավերացում)։ Միջազգային պայմանագրերի հաստատումը բուրժուական երկրներում կատարվում է պետության գերագույն իշխանության՝ պառլամենտի կամ պետության ղեկավարի կողմից, իսկ ՍՍՌՄ-ում՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության կողմից։ Այդպիսի հաստատումից հետո պետությունները փոխանակում են հատուկ փաստաթղթեր, որոնք կոչվում են վավերագրեր։ Այդ պահից պայմանագիրը մտնում է ուժի մեջ։ Օրինակ՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը 1955 թվականի սեպտեմբերի 24-ի Հրամանագրով, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ներկայացմամբ, հաստատեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու համաձայնագիրը, որը կնքվել էր 1955 թվականի սեպտեմբերի 13-ին Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի Կառավարական դելեգացիա-

ների միջև Մոսկվայում տեղի ունեցած բանակցությունների հետևանքով։ Նույն այդ համաձայնագիրը հաստատվեց նաև Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի Բունդեստագի (գերագույն իշխանության) կողմից և մտավ ուժի մեջ։



ՊԱՐԻՏԵՏ— Լատիներեն բառ է, որը նշանակում է՝ հավասարություն։ Կողմերի հավասարության սկզբունքը կիրառվում է սովորաբար այն ժամանակ, երբ այսպես կոչված համաձայնողական կարգով քննության է առնվում որևէ կոնֆլիկտ։ Օրինակ, միջազգային հարաբերություններում, երբ քննության է առնվում որևէ սահմանային կոնֆլիկտ, միջադեպ, կամ պետությունների միջև կնքված պայմանագրի չկատարման կամ խախտման որևէ հարց։ Այդ կարգի վեճերը և կոնֆլիկտները լուծելու համար առանձնացվում են հատուկ հանձնաժողովներ պարիտետային հիմունքներով, այսինքն՝ կողմերի հավասար թվով ներկայացուցիչներից, հավասարության հիմունքներով։



ԴԻՍԿՐԻՄԻՆԱՑԻԱ— Լատիներեն բառ է, որը բառացիորեն նշանակում է՝ խտրություն դնել։ Միջազգային հարաբերությունների բնագավառում դիսկրիմինացիա



(խտրականություն) է համարվում այն, երբ նվաստացվում են որոշ պետությունների ներկայացուցիչների իրավունքները, այսինքն՝ երբ որևէ պետության ներկայացուցիչների կամ կազմակերպությունների համար սահմանվում են ավելի պակաս իրավունքներ, քան ունեն ուրիշ պետություններ։

Կապիտալիստական երկրներում կիրառվում են զանազան դիսկրիմինացիաներ։ Օրինակ՝ ռասսայական դիսկրիմինացիա։ Այդ նշանակում է մարդկանց իրավունքների սահմանափակում և հալածանք՝ ելնելով նրանց ռասսայական պատկանելիությունից, օրինակ, նեգրերի և հնդիկների նկատմամբ գործադրվող խտրականությունը ԱՄՆ-ում։ Ռասսայական խտրականությունը բխում է մարդատյաց ռասսայական «թեորիայից» և հանդիսանում է իմպերիալիստական պետությունների ամբողջ գաղութային քաղաքականության բաղկացուցիչ մասը։

Խտրականություն է գործադրվում նաև մարդկանց սեռից, քաղաքական և կրոնական համոզմունքներից ելնելով։ Խտրականության այդ տեսակը լայնորեն տարածված է կապիտալիստական երկրներում։ Օրինակ, առաջադիմական հայացքներ ունեցողների ազատումը պետական ծառայությունից ԱՄՆ-ում, կանանց ընտրական ձայնից զրկելը Թյուրքիայում և Իրանում, կանանց և երեխաների աշխատանքի պակաս վարձատրությունը Անգլիայում, Ֆրանսիայում և կապիտալիստական այլ երկրներում և այլն։ Այսպես,

կոչված աշխատանքային խտրականությունը քաղաքացիներին զրկում է աշխատանքային իրավունքներից կամ սահմանափակում այդ իրավունքները կապիտալիստական երկրներում, հանգեցնում է հավասար աշխատանքի համար անհավասար վարձատրության, աշխատավորների առանձին խմբերի համար սահմանափակում է որակյալ աշխատանքի անցնելու հնարավորությունը, արգելում է աշխատավորներին մտնելու քաղաքական պարտիաների կամ պրոֆմիությունների մեջ և այլն։ Այդ խտրականությունը կիրառվում է այն նպատակով, որպեսզի հակասություններ առաջ գան բանվորների մեջ և դրանով իսկ հեշտացվի բանվոր դասակարգի ամենագիշատիչ շահագործումը և ձեռնարկատերերի համար բարձր շահույթների ապահովումը։

ՍՍՌՄ-ը վճռականորեն պայքարում է միջազգային հարաբերությունների բնագավառում ամեն տեսակի խտրականության դեմ և հետևողականորեն կենսագործում է ժողովուրդների իրավահավասարության և բարեկամության սկզբունքը։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան ամրապնդել է մեր երկրի քաղաքացիների հավասարությունը՝ անկախ սեռից, ռասայական կամ ազգային պատկանելիությունից և կրոնական համոզմունքներից։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում նույնպես գոյություն չունի խտրականություն։

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Գր. ՊԵՏՐՈՍՅԱՆ




## ԲԱՑՎԱԾ Է
## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի
1956 թվականի

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է կապի գրասենյակների և «Սոյուզպեչատ»-ի բոլոր բաժանմունքներում։*

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

12 ամիսը— 12 ռ.,
6 ամիսը— 6 ռ.,
1 համարը—50 կոպեկ։

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»



**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 20** **1955 г.**

*ՎՖ 13035* *Պատվեր 903* *Տիրաժ 8600*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*